ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# *Ագիտատորի*
# ԲԼՈԿՆՈՏ




№ 15 ՕԳՈՍՏՈՍ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:*




ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԱՎԵԼԻ ՇԱՏ ՊՏՈՒՂՆԵՐ, ՀԱՏԱՊՏՈՒՂՆԵՐ ԵՎ ԽԱՂՈՂ ՄԵՐ ԵՐԿՐԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ

*Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը անդադրում հոգ են տանում մեր մեծ երկրի ժողովրդական տնտեսության բազմակողմանի զարգացման համար, ժողովրդի բարօրության համար:*

*Պտուղների, հատապտուղների և խաղողի արտադրությունն ու մթերումներն ավելացնելու մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից օրերս ընդունած որոշումը լայն հնարավորություններ է ստեղծում այգեգործության և խաղողագործության հետագա զարգացման համար: Նախատեսվում է այգիների տարածությունների ընդարձակման և մշակության բարելավման միջոցով մոտակա տարիներին պտուղների, հատապտուղների և խաղողի համախառն բերքն ավելացնել ոչ պակաս, քան 1,5—2 անգամ:*

*Կոլտնտեսությունների խորհուրդ է տր-*



վում մշակել այգեգործության և խաղողագործության զարգացման հեռանկարային պլաններ։ Հեռանկարային պլան մշակելիս կոլտնտեսությունները պետք է նախատեսեն այգիների չափն ու սորտային կազմը։ Բացի այդ, նրանք պետք է նախատեսեն, թե նոր այգիներում ինչպիսի հիդրոմելիորատիվ միջոցառում է անհրաժեշտ անցկացնել, այգեպաշտպան շերտեր տնկել, խոր հերկ և հողի պարարտացում կատարել։

Խնդիր է դրվում լայնորեն կազմակերպել համապտուղների այգիների տնկումներ հատկապես խոշոր քաղաքների և արդյունաբերական կենտրոնների մերձակա շրջաններում։

Պարտիայի և կառավարության մշտական հոգատարության շնորհիվ կոլտնտեսություններում և սովխոզներում պտղաբուծության և այգեգործության զարգացման համար ըստեղծվում է նյութա-արտադրական ամուր բազա։ Օրինակ, նախատեսվում է ռեսպուբլիկաների ձեռնարկություններում կազմակերպել պտղաբուծական և այգեգործական ձեռքի բարձրորակ գործիքների արտադրություն։ Մոտակա երկու—երեք տարում ՄՏԿ-ները և սովխոզները կհագեցվեն այգիներում աշխատող հատուկ տրակտորներով,



վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարի ապարատներով և շատ ուրիշ մեքենաներով ու գործիքներով։

Այս նոր որոշմամբ այն ՄՏԿ-ներում, որոնց գոտում կան կոլտնտեսային պտղատու և խաղողի խոշոր այգիներ, ստեղծվելու են մասնագիտացված տրակտորային բրիգադներ, իսկ այգիների տարածությունը փոքր լինելու դեպքում՝ առանձնացվելու են մասնագիտացված տրակտորային ագրեգատներ, որոնք կոմպլեկտավորված կլինեն կցովի և կախովի անհրաժեշտ գործիքներով։

Խոշոր աշխատանք է կատարվելու այգիները տնկանյութով ապահովելու համար։ Ռեսպուբլիկաներում, երկրամասերում և մարզերում կազմակերպվելու են տնկարաններ, որոնք հագեցված կլինեն անհրաժեշտ տեխնիկայով։ Տնկարանները տնկիներով լի ու լի կբավարարեն ոչ միայն կոլտնտեսություններին, սովխոզներին, այլև բնակչությանը։

Միջոցառումներ են ձեռնարկված, որպեսզի առաջիկայում պտղատու և խաղողի այգիներում աշխատելու համար պատրաստվեն 40 և 14—16 ձիու ուժանոց շարժիչներ ունեցող թրթուրավոր տրակտորներ,

խոր փխրեցուցիչներ՝ հողը մինչև 100 սանտիմետր խորությամբ մշակելու համար և յարուսային պլանտաժային գութան մինչև 80 սանտիմետր խորությամբ հերկ կատարելու համար։ Վերջինս կունենա պարարտացնող ապարատ։ Պատրաստվելու են նաև հզոր այգեսրսկիչներ, նեղ-գաբարիտային տրակտորներ խաղողի այգիների 1,5—1,8 մետր լայնությամբ միջշարային տարածությունների խոր կրկնահերկ կատարելու և խաղողի վազերը թաղելու ու բացելու համար, ինչպես նաև լանջերի վրա աշխատող տրակտորներ ու կախովի շատ մեքենաներ։

Պտղաբուծությունն ու այգեգործությունը զարգացնելու վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումը դրանով չի սահմանափակվում։ Պետական խոշոր օգնություն է ցույց տրվելու կոլտնտեսականներին, բանվորներին ու ծառայողներին, որպեսզի վերջիններս պտղատու ու խաղողի այգիներ գցեն իրենց տնամերձ հողամասերում։ Խրախուսվում է բանվորների ու ծառայողների կոլեկտիվ այգեգործության զարգացումը։ Այգիներ գցելու համար օգնություն է ցույց տրվելու նաև հողամասեր ունեցող դպրոցներին, հիվանդանոցներին,



մանկապարտեզներին, ՄՏԿ-ներին։ Նախատեսվում է պտղատու ծառեր տնկել երկաթուղիների, խճուղիների, սայլուղիների երկայնքով և քաղաքների ու գյուղերի փողոցներում։ Պտղաբուծությունն ու այգեգործությունը զարգացնելու նպատակով պետական օգնությունն իրականացվելու է հետևյալ կերպ՝ կոլտնտեսականներին և բանվոր ծառայողներին պետական տնկարաններից բաց է թողնվելու տնկանյութ և այգիների վնասատուների ու հիվանդությունների դեմ պայքարելու համար թունաքիմիկատներ և անհրաժեշտ ապարատուրա։

Կոլտնտեսականների ու բանվոր-ծառայողների այգիներում վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարելու աշխատանքի վարձատրությունը, ինչպես նաև վարձակալման կարգով օգտագործվող ապարատուրայի համար վճարումը կատարվելու է տեղական Սովետների գործկոմների կողմից սահմանված սակագներով։

Որպեսզի կոլտնտեսություններն ու կոլտնտեսականներն ավելի շատ շահագրգռված լինեն պտղաբուծության ու այգեգործության զարգացմամբ և պետությանը ավելի շատ մրգեղեն վաճառեն, սահման-

ված է, որ այսուհետև պտղի ու խաղողի մթերումները կատարվելու են մթերումների վայրերի կոլտնտեսային շուկաներում գործող գներով։ Միաժամանակ կոլտնտեսություններին թույլատրվում է պտղի և խաղողի կոնտրակտացիա, ինչպես տարեկան, այնպես էլ երկարաժամկետ (2—3 տարվա) պայմանագրերով և մթերող կազմակերպություններից ստանալ դրամական կանխավճար։

Ինչպես Սովետական Միության, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի աշխատավորների նյութական բարեկեցությունը բարձրացնելու գործում խոշոր նշանակություն ունի ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը պտուղների, հատապտուղների և խաղողի արտադրությունն ու մթերումներն ավելացնելու մասին։

Ագիտատոր, ունկնդիրներին լայնորեն պարզաբանիր սույն որոշումը, օգնիր նրանց հստակ պատկերացնելու այն արտոնությունները, որ պարտիան ու կառավարությունը շնորհել են պտղաբուծությամբ ու այգեգործությամբ զբաղվող կոլտնտեսություններին, կոլտնտեսականներին և բանվոր-ծառայողներին։

---

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԵՐՐՈՐԴ ՍԵՍԻԱՆ

Ավարտվեց Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի չորրորդ գումարման Գերագույն Սովետի երրորդ սեսիան։ Սեսիան քննության առավ հետևյալ կարևոր հարցերը՝ 1) Ռեսպուբլիկայի ջրային տնտեսության վիճակի և նրա հետագա զարգացման միջոցառումների մասին, 2) Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսական ջրօգտագործման մասին օրենքի նախագծի հաստատման մասին, 3) Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Արդյունաբերության ու տրանսպորտի, Գյուղատնտեսության, Կուլտուրայի ու Լուսավորության, Առողջապահության ու սոցիալական ապահովության, Առևտրի մշտական հանձնաժողովներ ընտրելու մասին, 4) Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերի հաստատումը։

Օրակարգի առաջին հարցի մասին զեկուցեց Հայկական ՍՍՌ Ջրային տնտեսության մինիստր դեպուտատ Գ. Ա. Բաղրամյանը։

Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության մեծ հիմնադիր Վ. Ի. Լենինը Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստներին ուղղված նամակում գրել է։

«Իսկույն աշխատել բարելավել գյուղացիների դրությունը և սկսել էլեկտրիֆիկացիայի, ոռոգման խոշոր աշխատանքները։ Ոռոգումն ամենից ավելի է պետք և ամենից ավելի կվերստեղծի երկիրը, կվերածնի նրան, կթաղի անցյալը, կամրապնդի անցումը դեպի սոցիալիզմ»։

Առաջնորդվելով Վ. Ի. Լենինի այս ցուցումներով, Հայաստանի աշխատավորները Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության անմիջական օգնությամբ ու ղեկավարությամբ խոշոր հաջողություններ են ձեռք բերել ռեսպուբլիկայի իրրիգացիոն աշխատանքների բնագավառում, որը լայն հնարավորություններ ստեղծեց հացահատիկային ու տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակման ու նրանց բերքատվության բարձրացման համար։

Հայաստանում Սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին վե-



րականգնվել է 430 ջրանցք՝ 3.220 կիլոմետր ընդհանուր երկարությամբ, դրա հետ միաժամանակ սկսվեց նոր օբյեկտների կառուցումը։ 1925—1940 թվականների ընթացքում շահագործման հանձնվեցին Շիրակի, Հոկտեմբերյանի, Կարճևանի, Մազրայի, Նոր Դալմայի, Նալբանդի, Սխխանի և այլ ջրանցքներ, ինչպես նաև բազմաթիվ ջրհան կայաններ, որոնք ոռոգելի դարձրին ավելի քան 40 հազար հեկտար տարածություն։

Այդ տարիների ընթացքում մշակվեց Սևան—Հրազդան իրրիգացիոն-էներգետիկ կասկադի սխեման։ Այդ սիստեմի առաջին օբյեկտը Ստալինի անվան ջրանցքն է, որը շահագործման է հանձնվել 1932 թվականին և ոռոգում է 22 հազար հեկտար տարածություն։

Ռեսպուբլիկայում ջրաշինարարական աշխատանքների լայն հեռանկարներ բացվեցին ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1940 թվականի սեպտեմբերի 7-ի որոշմամբ։ Սկսվեցին Ներքին Հրազդանի ջրանցքի շինարարությունը՝ 9 հազար հեկտար հող ոռոգելու համար, Թալինի ջրանցքինը՝ 12 հազար հեկտար ոռոգելու, Գառնիի և այլ ջրանցքների շինարարությունը։

1951 թվականին սկսվեց 35 կիլոմետր երկարությամբ Արզնի-Շամիրամ ջրանցքի առաջին հերթի կառուցումը, որը ոռոգելի է դարձնելու 13 հազար հեկտար հող, գլխավորապես Աշտարակի շրջանում։

1954 թվականին սկսվել է Կոտայքի ոռոգման սիստեմի շինարարությունը՝ 7,5 հազար հեկտար տարածություն ոռոգելու համար, որի մայր ջրանցքի երկարությունը կազմում է 42 կիլոմետր։ Իրրիգացիոն այս խոշոր սիստեմներին զուգընթաց կառուցվում էին նաև համեմատաբար մանր օբյեկտներ։ Արդեն շահագործման են հանձընվել Գառնիի, Լոռվա, Աղիամանի, Նորքի և այլ ջրանցքներ։

Ռեսպուբլիկայում գործող պետական մայր ջրանցքների ընդհանուր երկարությունը վեցերորդ հնգամյակի սկզբում կազմում է 550 կիլոմետր, որոնք ոռոգում են 90 հազար հեկտարից ավելի ցանքատարածություն։ Ներկայումս ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում գործում են 51 ջրհան կայաններ, որոնք ոռոգում են 10 հազար հեկտարից ավելի հող։

Խոշոր աշխատանքներ են կատարվել Արարատյան դաշտավայրում և մյուս շրջան-



ներում ճահիճների և ճահճացած հողերի չորացման ուղղությամբ։ Մինչև 1956 թվականը չորացվել են 7,5 հազար հեկտար այդպիսի հողեր, որը մեծ նշանակություն ունեցավ ինչպես ցանքատարածությունների ընդարձակման, այնպես էլ բնակչության առողջապահության համար։

Ներկայումս ռեսպուբլիկայում գործող ջրամբարների թիվը հասնում է 220-ի։ Միայն Արարատյան դաշտավայրում վերջին տարիների ընթացքում փորված է 350 արտեզյան ջրհոր։

Եթե ռեսպուբլիկայում ոռոգվող հողերի ընդհանուր տարածությունը 1920 թվականին կազմում էր 62 հազար հեկտար, ապա վեցերորդ հնգամյակի սկզբում այն կազմում է 213 հազար հեկտարից ավելի։ Առաջ եթե անջրդի տարածությունների յուրաքանչյուր հեկտարից ստացվում էր 4—5 ցենտներ ցորենի բերք, ապա ներկայումս ջրովի դարձած այդ հողերից Կոտայքի, Ախուրյանի, Բասարգեչարի և այլ շրջաններում ստանում են մինչև 25 ցենտներ։

Ռեսպուբլիկայում ջրաշինարարական օբյեկտների կառուցման և իրրիգացիոն այլ աշխատանքների համար մինչև 1940 թվա-

կանը ծախսվել է 100 միլիոն ռուբլի, իսկ 1941 թվականից մինչև 1955 թվականը ծախսվել է 280 միլիոն ռուբլի, որից միայն հինգերորդ հնգամյակում՝ 136 միլիոն ռուբլի։

Զգալի աշխատանքներ են կատարվել ռեսպուբլիկայում նաև հակահեղեղային աշխատանքների ուղղությամբ։ Եթե վերջին 20 տարում հակահեղեղային աշխատանքների վրա ծախսվել է 14,3 միլիոն ռուբլի, ապա միայն հինգերորդ հնգամյակում ծախսվել է 6,5 միլիոն ռուբլի Արաքս, Հրազդան, Քասախ, Գառնի, Վեդի, Արփա, Դեբեդ, Աղստև, Ախուրյան և այլ գետերի վրա։

ՍՄԿՊ 20-րդ համագումարի դիրեկտիվների համաձայն նախատեսվում է Հայաստանում ոռոգվող հողերի տարածությունը ընդարձակել 39 հազար հեկտարով և ջրովի դարձնել 150 հազար հեկտար արոտավայրեր։ Դա խոշոր խթան կհանդիսանա խաղողի, պտղատու այգիների, շաքարի ճակնդեղի, բանջարա-բոստանային, հացահատիկային, կերի և այլ կուլտուրաների աճեցման համար։ Նախատեսվում է 6-րդ հընգամյակում ծախսել 238,5 միլիոն ռուբլի, որից 216 միլիոնը պետական բյուջեի հաշ-



վին, իսկ մնացած 22,5 միլիոնը կոլտնտեսությունների հաշվին։

Նախատեսվում է առաջին հերթին ավարտել իրրիգացիոն այն օբյեկտները, որոնց կառուցումը սկսվել է 5-րդ հնգամյակում։ Այսպես, օրինակ, կավարտվի Արզնի-Շամիրամ ջրանցքի առաջին հերթի և Թալինի ու Կոտայքի ջրանցքների շինարարությունը։ Կավարտվի նաև Ներքին Հրազդանի ջրանցքի երկրորդ հերթի, Ալափարսի, Դվինի ջրանցքների շինարարությունը, Արմաշի, Շնողի, Ճոճկանի, Լճկաձորի, Սպիտակի, Արջուտի, Սովետականի, Խալխալի ջրհան կայանների կառուցումը։ 1957—1960 թվականների ընթացքում նախատեսվում է ռեսպուբլիկայի գրեթե բոլոր շրջաններում ցածր լիմիտային մոտ 50 նոր օբյեկտների կառուցումը։ 6-րդ հնգամյակում ջրաշինարարական նոր օբյեկտների կառուցման շնորհիվ ոռոգելի կդառնան 39 հազար հեկտար նոր հողեր, որից 12 հազար հեկտարը խաղողի այգիների և 9,7 հեկտարը պտղատու այգիների համար։

Արոտավայրերը ոռոգելի դարձնելու նպատակով նախատեսվում է 6-րդ հնգամյակում ներդնել 40 միլիոն ռուբլի, որից 7,5

միլիոնը կոլտնտեսությունների հաշվին։ Լուրջ ուշադրություն է դարձվելու արոտավայրերը խմելու ջրով ապահովելու և ճանապարհներ անցկացնելու վրա։

Սեսիայում հանդես եկած դեպուտատները նշեցին այն մեծ հոգատարությունը, որ պարտիան և կառավարությունը շարունակ ցույց են տալիս սոցիալիստական գյուղատնտեսության բարձրացման և այդ կապակցությամբ ջրաշինարարությունը և ոռոգման ցանցը երկրում լայնորեն ծավալելու ուղղությամբ։

Սեսիան լսեց նաև Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Նախագահի տեղակալ ընկ. Գ. Ս. Դավթյանի զեկուցումը Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական ջրօգտագործման օրենքի նախագծի մասին, որը Սեսիայի քննարկմանն ու հաստատմանն է ներկայացվել Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի կողմից։ Սեսիան միահամուռ կերպով հաստատեց Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի ջրօգտագործման մասին օրենքը։

Այնուհետև սեսիան հաստատեց Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի երկրորդ և երրորդ սեսիաների միջև ընկած ժամանակաշրջանում Նախագահության ընդունած Հրամանագրերը։

---

# ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԳԱՂՈՒԹԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԻ ԱՆԿՈՒՄԸ

## Ն. ՍՄԵՏԱՆԻՆ

ՍՄԿԿ XX համագումարը մեծ ուշադրություն նվիրեց այն հսկայական փոփոխություններին, որոնք տեղի են ունեցել և տեղի են ունենում գաղութային ու կախյալ երկրներում։

Կապիտալիզմի համար գաղութները եղել են և մնում են էժան հումքի, էժան բանվորական ուժի աղբյուրներ, կապիտալների շահավետ գործադրման ոլորտներ։ Բավական է բերել Թեկուզ Աֆրիկայի օրինակը։ Այդ մայր ցամաքի հարստությունները հիմնականում դուրս են տարվում դեպի եվրոպական երկրները։ Ընդսմին գաղութարարները այդ հարստությունները տեղում գնում են չնչին գներով, բայց Եվրոպայում վաճառում են եռապատիկ գներով։ Օրինակ՝ մեկ տոննա սուրճը համաշխարհային շուկայում արժե 520 ֆունտ ստերլինգ, մինչդեռ անգլիական մոնոպոլիաների համար այն նստում է

170 ֆունտ։ Զարմանալի չէ, որ այս պայմաններում առասպելական հարստություն են դիզում գաղութներ շահագործող մոնոպոլիաները։

Իսկ ինչպե՞ս են ապրում բնիկ ժողովուրդները այն երկրների, որոնք այնքան առասպելորեն հարստացնում են եվրոպական և ամերիկյան ֆինանսական տուզերին։

Պաշտոնական տվյալներով, անգլիական գաղութ Նիգերիայում կա 111 բանտ և միայն 118 հիվանդանոց, այսինքն՝ բնակչության յուրաքանչյուր 250 հազար շնչին մեկ հիվանդանոց։ Այստեղ երեխաների կեսից ավելին մահանում է դեռ մեկ տարեկան չդառած։ Կանադական պրոֆմիութենական գործիչ Ջիմ Բերին, որի մասին ոչ մի կերպ չի կարելի ասել, թե նա կապիտալիզմի հակառակորդ է, անցյալ տարի Կենիա այցելելուց հետո գրել է. «Աշխատավարձն այստեղ չնչին է. ամսական աշխատավարձի առավելագույն չափը հաճախ կազմում է 7 դոլար... Կարող եք երջանկություն համարել, եթե ձեզ հաջողվի ապրել յոթ դոլարով»։ Այսպիսի թշվառ, տառացիորեն կիսաքաղց և իրավազուրկ կյանք են վարում հարյուր միլիոնավոր մարդիկ Աֆրիկայի, Ասիայի և



Լատինական Ամերիկայի նաև մյուս գաղութներում և կախյալ երկրներում։

Այդ երկրների բնակչությունը չէր կարող, իհարկե, հաշտվել գաղութարարների քաղաքականության հետ, որը դեպի քայքայում և մահ էր տանում ամբողջ ժողովուրդների։ Նա վաղուց ի վեր մաքառում է իր ազատության և անկախության համար։

Ռուսաստանում կատարված Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան ուժեղ հարված հասցրեց նաև իմպերիալիզմի գաղութային սիստեմին, նրա թիկունքներին՝ գաղութներում և կախյալ երկրներում։ Ռուսաստանի բանվորների և գյուղացիների հաջողությունների հսկայական տպավորության տակ՝ իրենց ազատության համար նոր ուժով պայքարի են ելնում Չինաստանի, Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Մերձավոր և Միջին Արևելքի երկրների ժողովուրդները։ Գաղութային և կախյալ երկրների մեծ մասում ստեղծվում են Կոմունիստական պարտիաներ, որոնք գլխավորում են ժողովրդական մասսաների պայքարը։

Ազգային-ազատագրական շարժման մեջ սկսված հաջորդ նշանավոր էտապը սերտորեն կապված է ֆաշիզմի ուժերի ջախջախման հետ երկրորդ համաշխարհային պա-

տերազմի ժամանակ։ Այդ գործում վճռական դեր խաղաց Սովետական Միությունը։ Ֆաշիզմի նկատմամբ դեմոկրատական ուժերի տարած հաղթանակը գաղութային երկրների ժողովուրդներին համակեց այն հավատով, որ իրենց ազատագրությունը հնարավոր է։

Հետպատերազմյան շրջանը բնութագրվում է ազգային-ազատագրական շարժման բուռն աճմամբ։ Այդ ժամանակաշրջանի ամենանշանավոր իրադարձությունը չինական մեծ ռևոլյուցիայի հաղթանակն էր։ Առաջ Չինաստանը մի կիսագաղութային երկիր էր, որին գոմինդանական բաշիբոզուկների աջակցությամբ պիշատչաբար շահագործում էին օտարերկրյա իմպերիալիստները։

Ջախջախելով չանկայշիական փթած ռեժիմը և 1949 թվականի հոկտեմբերին հռչակելով Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկա՝ չին ժողովուրդը, որին ղեկավարում է Կոմունիստական պարտիան, նոր, ամենապայծառ էջ բացեց իր հազարամյա պատմության մեջ։ Կարճ ժամանակամիջոցում Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան ոչ միայն բուժեց պատերազմի ծանր վերքերը, այլև հենվելով Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների



օգնության ու փորձի վրա, արագորեն առաջ ընթացավ սոցիալիստական վերափոխությունների ուղիով։

Չինական հաղթական ռևոլյուցիան հսկայական ազդեցություն ունեցավ Ասիայի մյուս երկրների ժողովուրդների բախտի վրա։ Նրա անմիջական ազդեցությամբ ասիական մի շարք երկրներում չտեսնված համաժողովրդական շարժում ծավալվեց օտարերկրյա գաղութային լուծը թոթափելու համար։

Հյուսիսային Վյետնամի ժողովուրդը բազմամյա համառ պայքարի շնորհիվ զենքով տապալեց Ֆրանսիայի 70-ամյա գաղութային տիրապետությունը։ Ազատագրված ժողովուրդը իր Աշխատավորական պարտիայի ղեկավարությամբ կազմեց Վյետնամի անկախ Դեմոկրատական Ռեսպուբլիկա։

Հարավ-Արևելյան Ասիայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման շնորհիվ՝ Բրիտանական նախկին գաղութների փոխարեն ստեղծվել են նոր, անկախ պետություններ՝ Հնդկաստան, Պակիստան, Բիրմա, Ցեյլոն։ Մյուս երկրների իմպերիալիստների կողմից պաշտպանվող հոլանդական գաղութարարների դեմ մղված կատաղի զինված պայքարի հրի մեջ ծնվեց և ամրացավ Ինդոնեզական Ռեսպուբլիկան։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում զգալի փոփոխություններ տեղի ունեցան նաև Արաբական Արևելքում։ Այստեղ ազատվեցին ֆրանսիական և անգլիական տիրապետությունից Սիրիան, Լիբանանը, Եգիպտոսը, Լիբիան, իսկ ամենավերջին ժամանակներս՝ Սուդանը, Մարոկկոն և Թունիսը։

Սկսվեց Աֆրիկայի մյուս երկրների, ինչպես նաև Ասիայի և Լատինական Ամերիկայի որոշ երկրների ժողովուրդների արթնացումը, որոնց իմպերիալիստները դեռևս շարունակում են պահել գաղութային և կիսագաղութային կախյալ վիճակում։

Այսպիսով, հետպատերազմյան անցած տասը տարիները գաղութային սիստեմի պրոգրեսիվ կերպով ուժեղացող անկման տարիներ էին, երբ գաղութային և կիսագաղութային կախումից ազատվեց ավելի քան մեկ միլիարդ երկու հարյուր միլիոն մարդ, կամ երկրագնդի ամբողջ բնակչության գրեթե կեսը։

Նախկին գաղութային երկրների, որոնք այժմ ոտք են դրել անկախ պետական գոյության ուղին, նոր դերի վառ օրինակ հանդիսացավ Ասիայի և Աֆրիկայի երկրների առաջին միջազգային կոնֆերանսը, որը կա-



յացավ անցյալ տարվա ապրիլին, Ինդոնեզիայի Բանդունգ քաղաքում։ Այդ կոնֆերանսը, որին ներկայացված էին 29 պետություններ, միահամուռ կերպով արտահայտվեց հօգուտ այն բանի, որ ուղիներ և միջոցներ գտնվեն միջազգային լարվածությունը թուլացնելու և նոր պատերազմը կանխելու համար։ Ընդհանուր խաղաղությանն աջակցելու վերաբերյալ կոնֆերանսի ընդունած հատուկ դեկլարացիայում կոչ արվեց բոլոր երկրներին՝ հասնել ընդհանուր զինաթափման և միջուկային զենքի փորձարկումների արգելման։ Կոնֆերանսը վճռականապես դատապարտեց գաղութականությունը և արտահայտվեց հօգուտ այն բանի, որ օգնություն ցույց տրվի գաղութային և կախյալ երկրների ժողովուրդներին՝ իրենց ազգային անկախության համար մղվող պայքարում։

Վերջին ժամանակներս բուրժուական տեսաբաններին և քաղաքական գործիչներին հատկապես հաճախ է զբաղեցնում այն հարցը, թե «Ինչո՞ւ Արևելքի ժողովուրդների համակրանքը Սովետական Միության կողմն է, այլ ոչ թե արևմտյան տերությունների»։ Դրան պատասխանելը դժվար չէ։ Արևելքի երկրների բնակչության ամենալայն խավերը լավ են իմանում, որ Սովետական պետու-

թյունը իր գոյության առաջին իսկ օրից համակրում է գաղութային և կիսագաղութային ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը, բարոյական աջակցություն ցույց տալիս նրանց պայքարին։ Դա մեր պետության արտաքին քաղաքականության լենինյան անխախտ սկզբունքներից մեկն է։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, երբ իմպերիալիստական տերությունները փորձում էին վերականգնել գաղութային նախկին կարգերը Սիրիայում, Լիբանանում, Ինդոնեզիայում, Սովետական Միությունը վճռականապես հանդես եկավ Միավորված Ազգերի Կազմակերպությունում, պաշտպանելով այդ երկրների ժողովուրդների սուվերեն իրավունքները։ Սովետական կառավարությունը ժողովուրդների իրավունքների պաշտպանության դիրքերում էր կանգնած նաև այն ժամանակ, երբ ՄԱԿ-ում քննության էին առնվում Մարոկկոյի, Ալժիրի, Թունիսի և նման այլ հարցեր։

Սովետական Միությունը գաղութային և կախյալ երկրների ժողովուրդներին ցույց է տալիս ոչ միայն քաղաքական աջակցություն անկախության համար մղվող պայքարում։ Այն երկրներին, որոնք արդեն ոտք են դրել պետական ինքնուրույն գոյության ուղին,



Սովետական Միությունը սիրահոժար կերպով ընդառաջ է գնում նրանց ինդուստրացման գործում, անշահախնդիր օգնություն է ցույց տալիս նրանց՝ տնտեսական անկախության համար մղվող պայքարում։

Սովետական Միությունը միշտ էլ հանդես է եկել և հանդես է գալիս հօգուտ այն բանի, որ առանց բացառության բոլոր ժողովուրդների համար ապահովվի անկախ ազգային գոյության իրավունք, տնտեսական և կուլտուրական պրոգրես։ Սա է պատճառը, որ գաղութների և նախկին գաղութների ժողովուրդները մշտական սեր ու հարգանք են տածում դեպի մեր երկիրը։

Իսկ ի՞նչ կարելի է ասել, օրինակ, այն քաղաքականության մասին, որ վարում են արևմտյան տերությունները Արևելքի երկրների նկատմամբ։

Հենց արևմտյան տերություններն են մեղավոր այն բանում, որ Արևելքը իր երբեմնի բազմահարուստ քաղաքակրթությամբ հանդերձ, վերջին երկու դարում ետ է շպրտվել մի քանի հարյուրամյակ։ Բայց և այն բանից հետո, երբ Արևելքի շատ երկրներ թոթափել են գաղութարարների լուծը, իմպերիալիստական տերությունները անում են իրենցից կախված ամեն ինչ, որպեսզի

խանգարեն երեկվա գաղութների անտեսական պրոգրեսին։ Ավելին, նրանք փորձում էին և փորձում են կասեցնելու պատմական զարգացման անխուսափելի ընթացքը, որն արտահայտվում է, մասնավորապես, այն փորձերի մեջ, որ արվում է քայքայվող գաղութային սիստեմը անկումից պահպանելու համար։

Այժմ այդ խայտառակ գործում գլխավոր դեր են խաղում Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք հավակնություն ունեն ժառանգելու Անգլիայի, Ֆրանսիայի, Յապոնիայի և գաղութային մյուս տերությունների գաղութային տիրապետությունները։ ԱՄՆ-ը որպես նախկին գաղութների ստրկացման լծակ օգտագործում է առաջին հերթին ամերիկյան տնտեսական այն օգնությունը, որ նա խոստանում է ասիական երկրներին, եթե նրանք մասնակցեն այնպիսի ռազմական պակտերի և խմբավորումների, ինչպիսին է ՍԵԱՏՕ-ն Հարավ-Արևելյան Ասիայում կամ՝ Բաղդադյան պակտը Մերձավոր և Միջին Արևելքում։ «ՍԵԱՏՕ-ն, Բաղդադյան պակտը ոչ միայն ռազմական և քաղաքական ագրեսիվ խմբավորումներ են, այլև թույլ զարգացած երկրների ստրկացման գործիք, իր բնույթով գաղութային շահա-



գործման մի նոր ձև»,— ասված է պարտիայի XX համագումարում ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։ Այդ պակտերի այդպիսի բնութագրման ճշտության մասին համոզիչ կերպով վկայում են անհերքելի փաստերը։ Վերցնենք օրինակ՝ Պակիստանը։ Այդ երկիրը թե՛ ՍԵԱՏՕ-ի և թե՛ Բաղդադյան պակտի մասնակից է. նա բավականաչափ ճաշակել է նաև, այսպես կոչված, ամերիկյան օգնությունը։

Ամերիկյան մոնոպոլիաները չեն խորշում ոչ մի միջոցից՝ Ասիայի, Մերձավոր և Միջին Արևելքի երկրներին գաղութային կապանքների մեջ գցելու համար։ ԱՄՆ-ի գործակալությունը կազմակերպում է դավադրություններ և հեղաշրջումներ, զենքի օգնությամբ իշխանության գլուխ է կանգնեցնում իր մարիոնետներին։

Սակայն զուր են նրանց փորձերը, ովքեր կամենում են կասեցնել պատմական զարգացման անխուսափելի ընթացքը։ Ոչ ասպակի զինված միջամտությունը, ոչ էլ այն խորամանկ մանևրները, որոնց դիմում են գաղութարարները, չեն կարող իր դարն ապրած իմպերիալիզմի գաղութային սիստեմը փրկել անկումից։

## ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԶՐՈՒՅՑ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Ա. ՀԱԽՈՒՄՅԱՆ

Ղուկասյանի շրջանի Վերին Ղուկասյան գյուղի կոլտնտեսության կովաբուծական ֆերմայի ագիտատոր

Տարիներ անընդհատ անասնապահ կոլտնտեսականների շրջանում ագիտացիոն բացատրական աշխատանք եմ կատարում: Դեռ չի եղել մի դեպք, որ ունկնդիրներն ինձանից դժգոհ մնան: Ընդհակառակը, նրանք միշտ էլ սիրով են լսում ինձ և իրենց հուզող հարցերի վերաբերյալ գոհացուցիչ պատասխան ստանում: Ագիտացիոն աշխատանքի գործում իմ հաջողությունը բացատրվում է նրանով, որ ես միշտ էլ խնամքով եմ նախապատրաստվում զրույցի: Նախօրոք զրույցի համար ընտրում եմ անհրաժեշտ թվեր ու փաստեր, ցուցադրական նյութեր, մեր շրջանին ու կոլտնտեսությանը



վերաբերվող կենդանի օրինակներ: Բացի այդ, աշխատում եմ, որ զրույցի թեմաները լինեն բազմազան:

Վերջերս ֆերմայի աշխատողների հետ զրույց ունեցա անասնաբուծության մթերատվության բարձրացման մասին: Ամենից առաջ ունկնդիրներին հիշեցրի ՍՄԿԿ 20-րդ համագումարի որոշումները անասնաբուծության զարգացման վերաբերյալ, ապա համառոտակի պատմեցի այն վիթխարի աշխատանքի մասին, որ կոլտնտեսային աշխատավորները կատարում են այդ պատմական որոշումը կենսագործելու համար: Մեր երկրում անասնաբուծությունը պետք է հասնի զարգացման այնպիսի մակարդակի, որը հնարավորություն տա ապահովելու սննդամթերքների ասպարեզում բնակչության և հումքի ասպարեզում արդյունաբերության աճող պահանջմունքները: Այնուհետև ունկնդիրներին կոնկրետ օրինակներով ցույց տվեցի, որ Վերին Ղուկասյանի կոլտնտեսությունը ունի բոլոր պայմանները անասնաբուծությունը զարգացնելու, նրա մթերատվությունը բարձրացնելու վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումները կենսագործելու համար: Մեր գյու-

ղըն ունի ալպյան արոտավայրեր և հարուստ խոտհարքներ, ուր հնարավոր է անասուններին արածացնել մինչև ուշ աշունը։ Խելացի կերպով օգտագործելով գյուղի բնական նպաստավոր պայմանները և սովետական առաջավոր զոոտեխնիկայի նվաճումները, մենք ընթացիկ տարում բարձր ցուցանիշների կհասնենք անասնաբուծության զարգացման գործում։ Անասնապահներին համառոտակի պատմեցի, թե անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար արոտային շրջանում ինչպիսի նպաստավոր պայմաններ կան։

Բոլոր տվյալները ցույց են տալիս, որ ընթացիկ տարում մեր կովաբուծական ֆերմայի աշխատողները անցյալ տարվա հետ համեմատած ավելի բարձր ցուցանիշների կհասնեն։ Եթե անցյալ տարի մինչև հուլիսի մեկը յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացվել էր 1092 կգ. կաթ, ապա ընթացիկ տարվա նույն ժամանակամիջոցում ստացվել է 1200 կգ. կաթ։ Կթվորուհի Մ. Տոնոյանը անցյալ տարի մինչև հուլիսի մեկը յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել էր 1080 կգ. կաթ։ Ընթացիկ տարվա նույն ժամանակամիջոցում նա արդեն ստա-



ցել է 1.280 կգ. կաթ, Զ. Մարգարյանը անցյալ տարի նույն ժամանակամիջոցում յուրաքանչյուր կովից ստացել էր 800 կգ. կաթ, իսկ այս տարի՝ 1.300 կգ. կաթ։

Բարձր կաթնատվության են հասել նաև կթվորուհիներ Ս. Վարոսյանը, Մ. Խաչատրյանը և շատ ուրիշներ։

Այնուհետև զրույցի ընթացքում գովաբանեցի այն կոլտնտեսականներին, որոնք լուրջ հաջողությունների են հասել կովերի կաթնատվությունը բարձրացնելու գործում։ Ունկնդիրներին ասացի, որ այդ հաջողությունները պատահական չեն, այլ դրանք խելացի ու մտածված աշխատանքի արդյունք են։ Սակայն, շարունակեցի զրույցը, այդ ցուցանիշները դեռ չեն բավարարում մեր ժողովրդի աճող պահանջմունքը։ Մենք կարող ենք և պետք է ավելի բարձր ցուցանիշների հասնենք։ Պետք է ավելացնենք հողատարածությունների յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց անասնաբուծական մթերքների և մսի արտադրությունը։ Այդ կապակցությամբ ունկնդիրներին հիշեցրի Վորոնեժի մարզի գյուղատնտեսության աշխատողների հիանալի նախաձեռնությունը, որոնք պարտավորվել են մսի ար-

տադրությունը կրկնապատկել ոչ թե հինգ, այլ մեկ տարում, իսկ կաթի արտադրությունը՝ մեկ ու կես տարում։ Վորոնեժցիների հայրենասիրական նախաձեռնությունը մեր ռեսպուբլիկայի անասնապահները ջերմորեն արձագանքեցին և այժմ էլ նրանք ջանք չեն խնայում ստանձնած պարտավորությունները լրիվ կատարելու համար։

Ծավալելով անասունների մթերատվությունը բարձրացնելու մասին ունկնդիրների հետ զրույցը, ես նրանց ուշադրությունը բևեռեցի կերի կայուն բազա ստեղծելու հարցի վրա։ Առանց առատ կերի,— ասում էին կոլտնտեսականները,— ավելորդ է խոսել անասնապահական մթերքների, հատկապես կաթնատվության բարձրացման մասին։ Հաստատելով ունկնդիրների այդ ճիշտ միտքը, նրանց տեղյակ պահեցի մեր կոլտնտեսությունում կատարվող կերի կուտակման ընթացքի մասին։ Միաժամանակ հիշեցրի նրանց, թե յուրաքանչյուր կովի համար որքան կոշտ, հյութալի և խտացրած կեր է կուտակվել ու դեռ պետք է կուտակվի մեր կոլտնտեսությունում։

---



# ՋԵՐՄ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ ԱՃՈՂ ՍԵՐՆԴԻ ՆԿԱՏՄԱՄԲ

## (Թվեր և փաստեր)

*Մեր երկրում միշտ էլ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ջերմ հոգատարություն են ցուցաբերել աճող սերնդի նկատմամբ։ Ամեն տարի վիթխարի միջոցներ են ծախսվում երեխաների դաստիարակության և մայրերի աշխատանքային ու կենցաղային պայմանները էլ ավելի բարելավելու համար։*

✪ 1956 թվականի ապրիլի 1-ից կանանց ֆիզիոլոգիական արձակուրդը ավելացվեց 35 օրով (77 օրվա փոխարեն 112 օր), իսկ անհաջող ծննդաբերության կամ զույգ երեխա ունենալու դեպքում արձակուրդը ավելացվեց ևս 2 շաբաթով։

✪ Օրերս Պետական կենսաթոշակների մասին ընդունվեց Օրենք։ Կարգավորվեց աշխատավորների ծերության հասակում և հաշմանդամության դեպքում թոշակավորման գործը։

✪ Հինգերորդ հնգամյակում մանկամսուրներում

*տեղերի թիվը ավելացավ 133 հազարով, իսկ մանկապարտեզներում երեխաների թիվը հասավ 1 միլիոն 700 հազար հոգու։ Վեցերորդ հնգամյա պլանով նախատեսված է մանկապարտեզների տեղերի աճ մոտ 45 տոկոսով։ Նոր հնգամյակի տարիներին, նախորդ հնգամյակի համեմատությամբ կկառուցվեն 2,4 անգամ ավելի շատ մանկական հիմնարկներ։*

✪ *1955 թվականին երկրի միջնակարգ դպրոցների թիվը, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել է 80 տոկոսով։ Բանվորական ու գյուղական երիտասարդական դպրոցների 8—10 դասարաններում սովորողների թիվն ավելացել է 4,3 միլիոն մարդով, կամ 3,4 անգամ, իսկ գյուղական վայրերում՝ 3,7 անգամ։*

✪ *ՌՍՖՍՌ-ի 122 քաղաքներում իրականացվում է ընդհանուր միջնակարգ կրթություն։ Ռուսաստանի Ֆեդերացիայի ծայր հյուսիսում ապրող ավելի քան 20 ազգություններ, որոնք մինչև ռևոլյուցիան համարյա լրիվ անգրագետ էին, այժմ ունեն գիր, գրականություն և բազմաթիվ դպրոցներ։ Հյուսիսի ազգային 7 օկրուգներում գործում են ավելի քան 600 դպրոց, որոնցում սովորում են 40 հազարից ավելի դպրոցականներ։ Լրիվ պետության հաշվին պահվում են 200 ինտերնատ։*

✪ *Պոլիտեխնիկ կրթություն մտցնելու կապակցությամբ ՌՍՖՍՌ-ում կազմակերպված է և գործում է*



*15 հազար արհեստանոց ու սենյակ։ Անցած հնգամյակի տարիներին միայն Մոսկվայում կառուցվել է 147 դպրոցական շենք և 338 մանկական հիմնարկ։ Նոր հնգամյակի տարիներին Մոսկվայում կառուցվելու է 200 դպրոցական և ավելի շատ մանկապարտեզների ու մանկամսուրների շենքեր։*

✪ *Ուկրաինական Ռեսպուբլիկայի հանրակրթական, միջնակարգ մասնագիտական և բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 7 միլիոն մարդ։*

✪ *Ուզբեկական ՍՍՌ-ում կա ավելի քան 5 հազար դպրոց, մոտավորապես 6 անգամ ավելի, քան 1924—25 թվականներին։*

✪ *Վեցերորդ հնգամյակում մեր երկրի բոլոր քաղաքներում և գյուղական վայրերում հիմնականում իրականացվելու է ընդհանուր միջնակարգ (տասնամյա) պոլիտեխնիկական կրթությունը։ Այդ կապակցությամբ մոտ 4 միլիոն աշակերտների համար կառուցվելու են նոր դպրոցներ։*

✪ *Սովետական կառավարության որոշմամբ միջնակարգ դպրոցներում, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում լրիվ վերացված է ուսման վարձը։*

✪ *Վեցերորդ հնգամյակում մերձքաղաքային, ամառանոցային, անտառապատ վայրերում սկսվելու է դպրոց-ինտերնատների շինարարությունը, որոնք կունենան բոլոր նպաստավոր պայմաններն ու հնարավո-*

նությունները երեխաների բազմակողմանի դաստիարակության համար։

✪ Սովետական Միությունում ամեն տարի պիոներական ճամբարներում, ամառանոցային մանկապարտեզներում, մանկատներում, սանատորիաներում ու տուրիստական բազաներում հանգստանում են 5,5 միլիոն երեխաներ։

✪ Բազմաթիվ արտադպրոցական հիմնարկներ նպաստում են երեխաների բազմակողմանի զարգացմանը, օգնում են ծնողներին աճող սերնդի կոմունիստական դաստիարակության գործում։ ՍՍՌՄ-ում գործում են 1911 պիոներական պալատներ ու տներ, պատանի տեխնիկների 193 կայան, պատանի բնասերների 168 կայան, 102 էքսկուրսիոն-տուրիստական կայան, 575 մանկական սպորտային դպրոց, 4 հազար մանկական գրադարան, չհաշված մյուս գրադարանների մանկական բաժինները, 140 պետական մանկական թատրոն և այլն։

✪ Երեխաների երջանիկ մանկությունն ապահովելու, նրանց դաստիարակության գործը բարելավելու ուղղությամբ զգալի աշխատանք է կատարվել նաև մեր ռեսպուբլիկայում։ Սովետական Հայաստանում ներկայումս գործում են ավելի քան 360 մանկապարտեզ և մանկամսուր, 1.184 ընդհանուր միջնակարգ, յոթնամյա և տարրական դպրոց, որտեղ սովորում են ավելի քան 250 հազար աշակերտ։

✪ Երևանում և ռեսպուբլիկայի մյուս քաղաքնե-



րում անցյալ հնգամյակի վերջերին ավարտվեց անցումը յոթնամյա կրթությունից ընդհանուր միջնակարգ (տասնամյա) կրթության։

✪ Հայկական ՍՍՌ 1956 թվականի պետական բյուջեով նախատեսված է դպրոցների, մանկապարտեզների, ինտերնատների, մանկատների, բուհերի, տեխնիկումների պահպանման և այլ նպատակների համար ծախսել 442,5 միլիոն ռուբլի։

✪ Այս տարվա ամռան ամիսներին Հայաստանի գողտրիկ և գեղատեսիլ վայրերում գտնվող պիոներական ճամբարներում և մանկական սանատորիաներում կհանգստանան ավելի քան 50 հազար երեխաներ։

✪ Վեցերորդ հնգամյակում Հայաստանի քաղաքներում և գյուղերում նախատեսվում է դպրոցական շինարարությունը, անցյալ հնգամյակի համեմատությամբ, ընդարձակել մոտավորապես երկու անգամ։

✪ Երեխաները ջերմ հոգատարությամբ են շրջապատված նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։

✪ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում երեխաները լրիվ ապահովված են դպրոցներով։ Նրանք ունեն պիոներական տներ ու պալատներ, մանկական գիտական կայաններ, գրադարաններ, պարկեր, ըստադիոններ և թատրոններ։ ՉԺՌ-ում ստեղծված են 3 թատերական խմբեր և տիկնիկային թատրոն։ Չինական երեխաներն ունեն իրենց սեփական մանկա-

կան գրականության հրատարակությունը: Վերջին 6 տարում հրատարակվել են 3.000 նոր գրքեր, 70 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով: Երկրի ազատագրման օրից չինարեն թարգմանվել և հրատարակվել է սովետական հեղինակների 776 մանկական գիրք, 10 միլիոն օրինակ տիրաժով:

✪ Երկրում կա ավելի քան 2 հազար մանկապարտեզ (չհաշված տարրական դպրոցներին կից նախադպրոցական խմբերը): Այդ մանկապարտեզներում ընդգրկված են 500 հազար երեխա: Միայն պրոֆմիությունների կողմից կազմակերպված է 4 հազար մանկամսուր և 2 հազար սենյակ կրծքի երեխայի կերակրման համար:

✪ Ալբանիայում ժողովրդական իշխանության տարիներին երեխաների մահացությունը կրճատվել է ավելի քան 3 անգամ:

✪ Երկրի ազատագրման առաջին իսկ օրերից մտցըվեց ընդհանուր տարրական պարտադիր ուսուցում, իսկ 1951 թվականից 7-ամյա պարտադիր ուսուցում քաղաքներում, մասնակիորեն նաև գյուղերում: 1955 թվականին պիոներական ճամբարներում հանգստացել են 80 հազար երեխաներ:

✪ Մինչև ժողովրդա-դեմոկրատական կարգերի հաստատումը Բուլղարիայում միայն երկու հիվանդանոցներին կից կային մանկական բաժիններ: 1954 թվականի վերջում հիվանդանոցներին կից արդեն գործում էին 104 մանկական բաժիններ: Այդ նույն ժա-



մանակ բացվեց 4 մանկական հիվանդանոց: Տարեցտարի ընդլայնվում է մանկական հիմնարկների ցանցը: Շինարարական օգտագործելի տարածությունների 4 տոկոսը տրամադրվում է մանկական հիմնարկներին:

✪ Ժողովրդական դեմոկրատական կառավարության գոյության տարիներին կառուցվել է 1.000 նոր դպրոց: 1954—55 ուսումնական տարում Բուլղարիայի դպրոցներում սովորում էին դպրոցահասակ երեխաների 99,5 տոկոսը: 1939 թվականի 5-ի փոխարեն, այժմ երկրում գործում է 20 բարձրագույն ուսումնական հաստատություն:

✪ Հունգարիայում մանկամսուրների տեղերի թիվը 1955 թվականին 1938 թվականի համեմատությամբ ավելացել է մոտ 20 անգամ, նորածին երեխաների մահացությունը կրճատվել է ավելի քան կիսով չափ:

✪ Նախապատերազմյան Լեհաստանում չկար ոչ մի արտադպրոցական հիմնարկ: Այժմ երկրում կա 113 երիտասարդական և պիոներական պալատներ, երիտասարդական կուլտուրայի տներ, որոնց կից կազմակերպված գիտական, տեխնիկական, գեղարվեստական և սպորտային խմբակներում պարապում են ավելի քան 64 հազար սովորողներ:

---

# ՖՐԱՆՍԻԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ 14-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

**Երևանի Շահումյանի անվան Կաշվի գործարանի ագիտատորներ Հ. Ռոստոմյանի, Ս. Գրիգորյանի պահանջով տպագրում ենք հոդված Ֆրանսիայի Կոմունիստական պարտիայի 14-րդ համագումարի մասին:**

*Հուլիսի 18—21-ը Հավրում տեղի ունեցավ Ֆրանսիայի Կոմունիստական պարտիայի 14-րդ համագումարը, որն անցավ պարտիայի միասնության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի նշանաբանով:*

*Համագումարը իր օրակարգում ուներ երեք հարց.*

*1. Հանուն սոցիալական առաջադիմության, հանուն Ֆրանսիայի ազգային վեհության.*

*2. Աշխատավոր մասսաների սպասարկումը մունիցիպալիտետների կողմից.*

*3. Պարտիայի ղեկավար օրգանների ընտրությունը:*



*Օրակարգի առաջին հարցի մասին ընդարձակ զեկուցումով հանդես եկավ Ֆրանսիայի Կոմունիստական պարտիայի գլխավոր քարտուղար ընկեր Մորիս Թորեզը:*

*Խոսելով արդի իրադրության բնորոշ գծերի մասին, իր զեկուցման մեջ ընկեր Թորեզը ընդգծեց, որ հետպատերազմյան փոփոխությունների շնորհիվ մեր դարաշրջանը բնութագրվում է մեկ հիմնական գծով՝ սոցիալիզմը համաշխարհային սիստեմի վերածվելով: Այդ կապակցությամբ բանվորական շարժման առջև մի շարք հարցեր ծառանում են նոր ձևով, որոնց խոր վերլուծությունը տվեց մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման կարևոր էտապ հանդիսացող Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը: Սոցիալիզմը համաշխարհային սիստեմի վերածվելը, սոցիալիստական գաղափարները կապիտալիստական երկրներում միլիոնավոր մարդկանց գրավելու հանգամանքը միանգամայն նոր պայմաններ են ստեղծել բանվոր դասակարգի շարքերի միասնության, պատերազմները կանխելու և սոցիալիզմի հաղթանակի համար:*

*Բնութագրելով Ֆրանսիայի ներքին դրությունը, ընկեր Թորեզը նշում է, որ ժողո-*

վրդական մասսաները ծավալում են պայքարը իրենց կենսական շահերի, երկրի ազգային անկախության համար, որի հետևանքով Ֆրանսիայի քաղաքականության մեջ որոշ փոփոխություններ են կատարվել:

Նույնպես մտահոգված Ֆրանսիայի ազգային շահերով, բանվոր դասակարգի ու բոլոր աշխատավորների ճակատագրի հարցերով Ֆրանսիայի Կոմունիստական պարտիան հանդես է գալիս կոնկրետ առաջարկություններով, որոնք կարող են փրկել երկիրը այժմյան վիճակից:

Զեկուցողը հանգամանորեն կանգ առավ Ալժիրում տիրող դրության հարցի վրա: Նա նշեց, որ 500 հազար մարդ կորվել են արտադրությունից, որ Ալժիրում վարվող պատերազմի յուրաքանչյուր օրը կլանում է մեկ միլիարդ ֆրանկ: Այդ պատերազմը տանում է դեպի դեմոկրատական ազատությունների խախտում և նպաստում է ֆաշիստական ուժերի զարգացմանը:

Ֆրանսիական Կոմունիստական պարտիան պայքարում է հանուն կրակի անհապաղ դադարեցման և Ալժիրի ժողովրդի ազգային իրավունքների ճանաչման:

Այնուհետև ընկ. Մորիս Թորեզը կանգ է առնում պատերազմները կանխելու պրոբլե-



մի վրա, ընդգծելով, որ միջազգային ասպարեզում դրա համար գոյություն ունեն հզոր ուժեր, սակայն հնարավորությունը չըպետք է շփոթել իրականության հետ: Միայն խաղաղության համար հանդես եկող բոլոր ուժերի մշտական աչալրջությունը կարող է ապահովել այդ խնդրի իրականացումը:

Ժամանակակից Ֆրանսիայում,— ասում է Թորեզը,— սոցիալիզմի հաստատման համար հասունացել են օբյեկտիվ պայմանները, քանի որ այստեղ սոցիալիստական գիտակցությունը թափանցում է միլիոնավոր աշխատավորների մեջ, ուստի և միանգամայն բնական է, որ առաջ է քաշվում նոր ռեժիմին անցնելու ուղիների հարցը: Նա նըշում է բանվոր դասակարգի շուրջը գյուղացիության, մտավորականության և արհեստավորների համախմբման հնարավորությունը, որի միջոցով կարելի է բուրժուազիայի տիրապետության պառլամենտը դարձնել ժողովրդական մասսաների իսկական իղձերի արտահայտության միջոց: Արդեն հիմա կոմունիստներն ու սոցիալիստները Ազգային ժողովում գրեթե մեծամասնություն ունեն: Անհրաժեշտ է միավորել ամբողջ բանվոր դասակարգի գործունեությունը: Ընկ. Թորեզը հատուկ ուժով ընդգծում է

Ֆրանսիայի Կոմունիստական պարտիայի անսասան հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին։ «Պայքարելով գործունեության միասնության համար,— ասում է նա,— կոմունիստները բացատրում են մասսաներին, որ միայն մարքսիզմ-լենինիզմի տեսությունը կարող է օգնել ճիշտ ըմբռնելու արտաքին և ներքին քաղաքականության բոլոր պրոբլեմները, կարող է տալ անհրաժեշտ իդեոլոգիական բազա բանվորների գործի հաջող պաշտպանության համար»։

Խոսելով անհատի պաշտամունքի հարցի մասին, ընկ. Թորեզն ասում է, որ համարձակ քննադատությունը այդ հարցի շուրջը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ուժի և սովետական կարգի ամրության նոր փայլուն ցուցադրումն է։ Այնուհետև նա կանգ է առնում ներպարտիական պրոբլեմների և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման հարցերի վրա, նշելով ներպարտիական դեմոկրատիայի և պրոլետարական ինտերնացիոնալիստական կապերի ամրապնդման անհրաժեշտությունը նոր պայմանների պահանջներին համապատասխան։

Օրակարգի երկրորդ հարցի վերաբերյալ



զեկուցումով հանդես եկավ ընկ. Ժակ Դյուկլոն։ Զեկուցողը խոսում է մունիցիպալիտետներում կոմունիստների տեղի ու դերի մասին, այն մասին, թե ինչպես պետք է մունիցիպալիտետները ծառայեցնել բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների շահերին։ Ընկ. Դյուկլոյի զեկուցումից երևում է, որ Ֆրանսիայի շատ մունիցիպալիտետներում ղեկավարությունը գտնվում է կոմունիստների ձեռքում։ Կան մունիցիպալիտետներ, որոնցում 30, ուրիշներում 20 տարիների ընթացքում անփոփոխ կերպով ղեկավարում են կոմունիստները։ Ընկ. Ժակ Դյուկլոն բերում է բազմաթիվ օրինակներ, թե ինչպես այն մունիցիպալիտետները, որոնցում կոմունիստները մեծամասնություն են կազմում, մեծ աշխատանքներ են կատարում աշխատավորության դրությունը բարելավելու համար։ Օրինակ, Հավրի մունիցիպալիտետը, որտեղ քաղաքագլուխը կոմունիստ է, ի հաշիվ հարուստների հարկադրման, ավելացրել է հատկացումները դպրոցների կահավորման համար 5 միլիոն ֆրանկով, դպրոցական ճաշարանների համար 6 միլիոն ֆրանկով, սոցիալական ապահովության կարիքների համար հատկացրել է 176 միլիոն ֆրանկ։

Վերլուծելով մունիցիպալիտետների գործունեությունը բնակարանային շինարարության ասպարեզում, Դյուկլոն նշում է, որ բնակարանային պայմանները Ֆրանսիայում ամենաանբարենպաստն են Եվրոպայի մյուս երկրների համեմատությամբ։ Միայն Սենա դեպարտամենտում գրանցված է 250 հազար ընտանիք, որոնք զրկված են նորմալ բնակարանային պայմաններից։ Ֆրանսիայում նորմալ բնակարանային պայմաններով ապահովելու համար պահանջվում է 5 միլիոն բնակարան, աշխատավորների մեկ երրորդից ավելին բնակվում է գերբնակեցված բնակարաններում, 200 հազար գյուղատնտեսական բանվորներ ապրում են սարայներում կամ ախոռներում։ Զեկուցողը ավելացնում է, որ պառլամենտի կողմից հատկացված միջոցները լրիվ չեն օգտագործվում բնակարանային շինարարության վրա։

Խոսելով մունիցիպալիտետների իրավունքների պաշտպանման և ընդլայնման մասին, ընկ. Դյուկլոն ասում է, որ մունիցիպալիտետները գործունեության մեծ հնարավորություններ են տալիս բանվոր դասակարգին և բոլոր աշխատավորներին, ուստի և բուրժուազիան ամեն կերպ հարձակվում է մունիցիպալիտետային ազատությունների



դեմ։ Այդ կապակցությամբ էլ մունիցիպալիտետային ազատությունների պաշտպանությունը անխզելիորեն կապված է դեմոկրատական ազատությունների և իրավունքների պաշտպանության հարցի հետ։ Ընկ. Դյուկլոն այնուհետև անդրադառնում է այն հարցին, թե ինչպես կոմունիստները և սոցիալիստները մունիցիպալիտետներում շատ հարցերում հանդես են գալիս միասնաբար, որը նպաստում է մունիցիպալիտետների գործունեությանը հօգուտ աշխատավորների շահերի։ Գնահատելով կոմունիստական մեծամասնություն ունեցող մունիցիպալիտետների գործունեությունը, զեկուցողը զգուշացնում է սխալների մեջ չընկնել և չկարծել, թե մունիցիպալիտետներով կարելի է սոցիալիզմի հասնել, ինչպես կարծում էին ընթացիկ դարի սկզբներին։ Ընկ. Դյուկլոն ապա անցնում է պարտիայի խնդիրներին, ասելով, որ անհրաժեշտ է շարունակել լուրջ ջանքեր պարտիայի ներկայացուցիչների գործունեությունը մունիցիպալիտետներում մոմենտի պահանջներին համապատասխան ավելի բարձր մակարդակի հասցնելու համար և վճռականորեն նրանց դնել պարտիայի մշտական օրգանների վերահսկողության տակ։ Իր գոյության սկզբից մեր պարտիան,

— ասում է Դյուկլոն,— վճռաբար խզել է
կապերը ռեֆորմիստական կոնցեպցիաների
հետ, պայքարելով պառլամենտական խում-
բը պարտիայի կենտրոնական կոմիտեին
ենթարկելու լենինյան սկզբունքի հաղթու-
թյան համար։

Ֆրանսիայի Կոմունիստական պարտիայի
14-րդ համագումարում ներկա էին 29 եր-
կրների կոմունիստական և բանվորական
պարտիաների ներկայացուցիչներ, այդ թը-
վում Սովետական Միության Կոմունիստա-
կան պարտիայի պատվիրակությունը՝ ընկ.
Սուսլովի գլխավորությամբ։ Համագումարը
եղբայրական պարտիաներից, որոնք տար-
բեր պատճառներով չէին կարողացել ուղար-
կել իրենց պատվիրակությունները, ստացել
էր 24 ողջույնի ուղերձ։ Համագումարում ող-
ջույնի ճառով հանդես եկավ ՍՄԿՊ պատ-
վիրակության ղեկավար ընկ. Սուսլովը։ «Սո-
վետական երկրի կոմունիստները և մեր ամ-
բողջ ժողովուրդը ի դեմս Ֆրանսիական Կո-
մունիստական պարտիայի տեսնում է ֆրան-
սիական բանվոր դասակարգի առաջնորդին,
աշխատավորների շահերի հավատարիմ
պաշտպանին, Ֆրանսիայի ազատասեր ժո-
ղովրդի՝ փառավոր դեմոկրատական և ռևո-
լյուցիոն տրադիցիաների արժանավոր ներ-



կայացուցչին»,— ասում է ընկ. Սուսլովը։
Իր ելույթի վերջում ընկ. Սուսլովը հրապա-
րակում է ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի
ողջույնը Ֆրանսիայի Կոմունիստական պար-
տիայի 14-րդ համագումարին։ Ընկ. Սուսլո-
վի ելույթը համագումարը ընդունեց մեծ
խանդավառությամբ։ Համագումարում ելույթ
ունեցան նաև մյուս եղբայրական պարտիա-
ների ներկայացուցիչները, որոնք միահա-
մուռ կերպով ընդգծում էին Կոմունիստա-
կան պարտիաների անսասան միասնությու-
նը միջազգային մասշտաբով, նրանց փո-
խադարձ վստահությունն ու համակրանքը,
ինչպես նաև վճռականությունը ազգային և
համաշխարհային մասշտաբով բանվորական
շարժման մեջ միասնություն հաստատելու՝
հանուն դեմոկրատիայի, ժողովուրդների
խաղաղ գոյակցության և սոցիալիզմի հաղ-
թանակի ամբողջ աշխարհում։

Համագումարում ելույթ ունեցող ընկեր-
ները հատուկ ուժով ընդգծում էին ՍՄԿՊ
XX համագումարի պատմական դերը մարք-
սիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքի
ստեղծագործական զարգացման ասպարե-
զում և արտահայտում էին իրենց մեծ սերն
ու համակրանքը դեպի Սովետական Միու-
թյան Կոմունիստական պարտիան, որը կո-



մունիզմի համար մղվող պայքարում լավա-
գույն օրինակ է ցույց տալիս եղբայրական
կոմունիստական ու բանվորական պարտիա-
ներին։

Ֆրանսիայի Կոմունիստական պարտիան
պատասխան ուղերձ է հղում ՍՄԿՊ Կենտրո-
նական Կոմիտեին, ինչպես նաև միահամուռ
կերպով դիմում է ընդունում՝ ուղղված բո-
լոր եղբայրական կոմունիստական ու բան-
վորական պարտիաներին։ Համագումարը
հավաստիացնում է, որ Ֆրանսիայի Կոմու-
նիստական պարտիան կարդարացնի իր նը-
կատմամբ եղած հույսերը և պրոլետարա-
կան ինտերնացիոնալիզմի իր պարտքը կը-
կատարի խաղաղության ու սոցիալիզմի
համար մղվող ընդհանուր պայքարում։ Վեր-
ջում համագումարը միաձայն ընտրում է
պարտիայի Կենտրոնական Կոմիտե։ Կենտ-
րոնական Կոմիտեն ընտրել է քաղբյուրո և
քարտուղարություն։ Ընկ. Մորիս Թորեզը
ընտրված է պարտիայի գլխավոր քարտու-
ղար։ Կենտրոնական Կոմիտեի քարտուղար-
ներ են ընտրվել ընկ. ընկ. Ժակ Դյուկլոն,
Մարսել Սերվենը, Գի Դյուկոլոնեն, Գաստոն
Պլիսսոնյեն և Գաստոն Վյենոը։

Դոցենտ ԱՂ. ԵՍԱՅԱՆ

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



### ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ



### ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ



### ОТВЕТЫ НА ВОПРОСЫ ЧИТАТЕЛЕЙ



---

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Յու. Կրիմով.— «Դերբենդ» տանկերը»։ 401 էջ, գինը 4 ռ. 50 կ., տիրաժ 5000։

Ս. Մանուկյան.— «Ժողովուրդների բարեկամության արտացոլումն սովետահայ գրականության մեջ», 142 էջ, գինը 4 ռուբլի, տիրաժ 2000։

Պերճ Զեյթունցյան.— «Նրա առաջին ընկերը», պատմվածքներ, 150 էջ, գինը 1 ռ. 25 կ., տիրաժ 5000։

Ա. Բերբերյան.— «Կարմիր պարտիզանի հուշատետրից», 94 էջ, գինը 1 ռ., տիրաժ 5000։


**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 15** **1956 г.**

ՎՖ 05180 Պատվեր 631 Տիրաժ 8430

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։